# ՅԱՌԱՋ

ՕՐԱԹԵՐԹ, ԱԶԳԱՅԻՆ, ՔԱՂԱՔԱԿԱՆ, ԳՐԱԿԱՆ

LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE

HARATCH

(Fondé en 1925) :-: R. C. Seine 376.286

Directeur et Propriétaire : SCH. MISSAKIAN
Rédaction et Administration
ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ
17, Rue Dameame, PARIS (13e) (ԵՐԹԵՒԵԿԻ ՀԱՄԱՐ՝ Métro : TOLBIAC)

Téléphone : GOBelins 15 - 70
Chèque Postal Paris 1678 - 63

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐ.— ՏԱՐԵԿԱՆ ՎԵՑԱՄՍԵԱՅ ԵՌԱՄՍԵԱՅ

| | ՏԱՐԵԿԱՆ | ՎԵՑԱՄՍԵԱՅ | ԵՌԱՄՍԵԱՅ |
|---|---|---|---|
| Ֆրանսա եւ Գաղութներ | 150 ֆրանք | 75 ֆրանք | 40 ֆր. |
| Անգլիա եւ Իտալիա | 265 ֆրանք | 140 ֆրանք | |
| Ուրիշ երկիրներ | 215 ֆրանք | 110 ֆրանք | |

ՈՒՐԲԱԹ 1 ՍԵՊՏԵՄԲԵՐ VENDREDI 1er Sept. 1939

ԺԵ ՏԱՐԻ — 15e Année No. 4132 — Խմբագիր՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ — ԳԻՆ 50 ՍԱՆԹԻՄ


# ԼՈՆՏՈՆ ԵՒ ՊԵՐԼԻՆ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿԵՆ ԲԱՆԱԿՑԻԼ

## ԳԵՐՄԱՆԻԱ ԳՐԱՒԵՑ ՍԼՈՎԱՔԻԱՆ, ԻԲՐԵՒ ԶՕՐԱԿԱՅԱՆ

## 40ԷՆ ՎԱՐ ԲՈԼՈՐ ԼԵՀԵՐԸ ԶԷՆՔԻ ՏԱԿ ԱՌՆՈՒԵՑԱՆ

### Անգլիա եւ Ֆրանսա չեն ընդունիր որ Լեհաստան քանդուած ըլլայ Պերլինի

«Յառաջ»ը լոյս չտեսաւ միայն մէկ օր, հինգշաբթի։ Ուստի, ամփոփենք այն բոլոր տեղեկութիւնները որ պիտի տրուէին երէկ, լրացնելու համար կացութեան ընդհանուր պատկերը :

Ինչպէս յայտնի է, Պերլինի անգլիական դեսպանը երկուշաբթի օր իր պաշտօնատեղին վերադառնալով, գիշերը Հիթլերի յանձնեց իր կառավարութեան հակառաջարկները։ Յաջորդ օրը, Հիթլեր ունկնդրութեան ընդունելով ...

...

Մինչ այս մինչ այն, գերմանական բանակը գրաւեց Սլովաքիան, իբրեւ զինուորական խարիսխ գործածելու համար զայն։ Լեհական կառավարութիւնը ուժգին բողոքագիր մը ուղղեց այս գործողութեան դէմ, միեւնոյն ատեն նոր զօրաշարժ կատարելով։ Այս նոր զօրակոչին ենթակայ են 40 տարեկանէն վար եղած բոլոր պահեստիները, գրաւուած են բոլոր կառքերը, ձիերը եւն.։ Իսկ Հիթլէր ազգ. պաշտպ. խորհուրդ մը կազմեց նախագահութեամբ մարաջախտ Կէօրինկի, ներդաշնակելու համար զինուորական, տնտեսական եւ ելմտական գործակցութիւնը։ Այս գերագոյն խորհուրդը կը բաղկանայ եօթը անդամներէ :

### Զինուորական պատրաստութիւնները

ԶՈՒԻՑԵՐԻՈՅ կառավարութիւնը բոլոր տրամադրելի ուժերը չարժման մէջ դնելով ...

...

## ԳԵՐԱԳՈՅՆ ՃԻԳԵՐ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆԸ ՓՐԿԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Պելժիոյ Թագաւորը եւ Հոլանտայի Թագուհին իրենց միջնորդութիւնը առաջարկեցին, լուծելու համար օրուան տագնապը։ Լեհաստան հաւանութեան ...

...

սայլի դաշնագիրը, թէեւ աւելի մեղմ լեզու մը կը գործածեն Անգլիոյ դէմ :

## ԹՈՒՐՔԻԱ Հ՛ՒԱՏԱՐԻՄ ՊԻՏԻ ՄՆԱՅ

« Փարի - Սուար »ի թղթակիցը Անգարայէն կը հեռագրէ թէ ինչ որ ալ պատահի, Թուրքիա հաւատարիմ պիտի մնայ իր յանձնառութեանց։ Այս առթիւ, շարունակ համերաշխութեան կոչեր կ'ուղղէ պալքանեան ազգերուն, որպէսզի զոհ չերթան գերմանական քարոզութեանց։ Վերջերս աւելի ամրապնդուած են Թուրքիոյ եւ Ռումանիոյ կապերը։ Բարեկամական յարաբերութիւններ կը պահուին նաեւ Եուկոսլավիոյ հետ :

Թղթակցին տեղեկութեանց համաձայն, եթէ Իտալիա պատերազմի բռնուի եւ կռիւը տարածուի Միջերկրականի մէջ, Թուրքիա ուղղակի չահագրգռուած ըլլալով անշուշտ պիտի անցնի Անգլիոյ եւ Ֆրանսայի կողմը : Թուրքիա նոյն դիրքը պիտի բռնէ, եթէ Պուլկարիա Յունաստանի վրայ յարձակի, Գերմանիոյ դրդումով, թէեւ չեն հաւատար այդպիսի բանի մը եւ խոհեմութեան կոչեր ուղղուած են Սոֆիայի :

### Խիստ հետապնդումներ քաղաքիկներուն դէմ

...

*** Ռոտիկանական վերատեսչութիւնը կը ծանուցանէ թէ իրբեւ հետեւանք կատարուած խուզարկութեանց, որոնց ընթացքին, բազմաթիւ համայնավարական թռուցիկներ բռնուեցան, Սէնի ընդհ. դատախազութիւնը ընդհանուր քննութիւն բացած է օտար երկրէ եկած կամ օտարէն ներշնչուած ...

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ. էջ)

## ՆՈՐ ԲՈՅՆ ՄՈՒՍԱ ԼԵՌԱՆ ԱՐԾԻՒՆԵՐՈՒՆ

(«ՅԱՌԱՋ»Ի ՀԱՆԳԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ)

ՑԱՆԿ 36

| | |
|---|---|
| Հայ Կամաւորներու եւ Մարտիկներու Միութեան Պէլվիլի մասնաճիւղէն (տես Դ. էջ) | 1477 |
| Շավիլի Երիտ. Միութեան հաւուեկյարգարէն | 400 |
| Վէնսէնի Ա. ցանկը | 210 |
| Բալուի Հայր. Միութեան Բ. ցանկը (Մարսէյլ) | 225 |
| Գուրկուանի գաղութէն, Իզէր | 410 |
| Գումար | 2722 |
| Օգոստ. 30ի գումարը | 104,381 |
| Ընդհ. գումար՝ | 107,103 |

ՎԷՆՍԷՆ.— Սերեւէ «Յառաջ»...

...

Ի դիմաց վարչութեան ատենադպիր՝ Ա. Ն. Պաղտասարեան, ատենապետ՝ Միքայէլեան :

ՄԱՐՍԷՅԼ, 28 Օգոստոս.— Յարգելի խմբագիր «Յառաջ»ի, Բալուի Հայր. Միութեան վարչութիւնը ձեզի կ'ուղարկէ Սանճաքի գաղթականներու ի նպաստ հանգանակուած գումարին երկրորդ ցանկը, գումար՝ 225 ֆրանք, այսպիսով մենք եւս կատարած կ'ըլլանք մեր պարտականութիւնը.— Վարչութիւն

...

Պաղտասարեան 30, Պէնլեան 5, Քէհեաեան 30, Անկիզեան Ա. 50, Անկիզեան Մ. 50, Բարսեղեան 5, Պէնլեան Վ. 5, Պալեան 5, Խուրճեան 10, գումար 410 ֆրանք :

## "Յառաջ"ի բաժանորդներուն եւ ընթերցողներուն

Ինչպէս հաղորդած էինք, մամուլը գրաքննութեան ենթարկուած ըլլալով, չորեքշաբթի օրուան թիւը մէկ օր ուշ հրապարակ ելաւ, իսկ հինգշաբթի չկրցանք հրատարակել, մինչեւ հայ գրաքննիչի մը անուանումը :

Երէկ այդ անուանումը կատարուած ըլլալով, թերթը այսուհետեւ թըղթատարին եւ կրպակներուն պիտի յանձնուի սովորական ժամուն։ Եթէ երբեմն յապաղումներ պատահին, պէտք է վերագրել կացութեան պահանջներուն, քանի որ փոխադրութեան բոլոր միջոցները կը գտնուին զինուորական իշխանութեան ձեռքը եւ թղթատարական պաշտօնեաներն ալ փոխուած են :

*** Թղթատարական վարչութիւնը մերժեց ընդունիլ Գերմանիոյ եւ Չեխոսլովաքիոյ ծրարները, ամէն հաղորդակցութիւն կտրուած ըլլալով այդ երկիրներուն հետ :

## ՏԵՂԱՏԱՐՈՒՓ ԱՆՁՐԵՒ ՊԱՍԻՏԻ ՇՐՋԱՆԻՆ ՄԷՋ

Լաթաքիայէն կը գրեն մեզի.—

...

